# ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԸ ԵՒ ԻՐԵՆՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՆԵՐԸ

## ՌԱԶՄԱՓՈՐՁ ՄԸ ՈՒՐ ՀԱՅԿԱԿԱՆ ԶՕՐՔԸ ԹԻՖԼԻՍ ԵՒ ԳԱՆՁԱԿ ԿԸ ՀԱՍՆԻ.— Ա՞ՅՍ ԷՐ ՈՐ ԿԵՐԱՒ ԽԱՆՋԵԱՆԻ ԳԼՈՒԽԸ.— ՎՈՐՈՇԻԼՈՎԻ ՎԿԱՅՈՒԹԻՒՆԸ

ԽՄԲ.— Երկրորդ մասն է այս հնչեան վաղեմի գործիչին թղթակցեան, որուն առաջին մասը հրատարակեր էինք շաբաթ օր.—

...յիշում եմ, որ արտասահմանեան ...երէն թերթերից մէկում 1936 թ. ...ուար ամսին կարդացել եմ Ռուսաստանից փախած մի երիտասարդ ...այնավարի (ի հարկէ հակաստա...ան) տուած տեղեկութիւնները ...աստանի մասին: Երկուս ու կէս ...ի առաջ նա յայտնում էր, որ ...րդային երկիրների բնակիչների ...խաւերում կառավարութեան դէմ ...հութիւնը օրից օր շատանում է: ...այտնում էր նաեւ, որ այդ դըժ...երը քաղաքական ոչինչ չեն պա...ում, այլ բարեփոխումներ են պա...ում տնտեսական հողի վրայ, ո...ետեւ նրանցից շատերը ապրած ...ով քաղաքացիական կռուի օրերը ...եսած լինելով այդ օրերի սար...երը, չեն կամենում քաղաքական ...ոնջներ ներկայացնել կառավա...եան՝ քաղաքացիական կռուի տե...տալու համար, այլ ներկայացը...են մի միայն տնտեսական պա...եր: Նա յայտնում էր մասնաւո...ս, որ Ռուսաստանում կայ շատ ...անդամներ ունեցող մի գաղտնի ...ակերպութիւն, որի անդամների ...ձակ մեծամասնութիւնը հա...վարներ են, որոնց էլ բացար...ծամասնութիւնը զինուորական...րոնց թւում ե՛ւ բարձրաստիճան ...րականներ: Սոյն կազմակեր...ան նպատակն է, ըստ նոյն ե...արդ համայնավարի, տապալել ...ին կառավարութիւնը եւ անմի...ձեռնարկել բարենորոգումնե...

Արտասահմանեան մի թերթի Մոսկուայի թղթակցի հաշուով գնդակահարուած սպաների թիւը հասնում է քսան եւ հինգ հազարի:

Այդ թիւը չափազանցութիւն չէ իմ կարծիքով եւ այդ թիւը ցոյց է տալիս, որ դաւադիրները բազմաթիւ տեղերում կազմակերպութիւններ են ունեցել, ինչպէս ասել էր երիտասարդ համայնավարը:

Արսէն եպիսկոպոս Ղլըջեանի Պարսկաստան որպէս կաթողիկոսականնուիրակ գալուց մի քանի ամիս առաջ Բաղդադից Ռաշտ եկած մի փախստականի հետ առիթ էի ունեցել խօսելու: Սա ինձ յայտնեց, որ եպիսկոպոսը ուղարկւում է Պարսկաստան Ջեկայի կարգադրութեամբ որպէս պատուիրակ կաթողիկոսի եւ ո՛չ որպէս առաջնորդ, որովհետեւ Պարսկաստանի Հայոց երկու թեմերը առաջնորդ ունեն: Կաթողիկոսական պատուիրակի վրայ պարտականութիւն է դրուած Մելիք-Թանգեան եպիսկոպոսին Ատրպատականի թեմից հեռացնել տալ՝ Մեսրոպ Եպիսկոպոս Մաղխասեանին նրա տեղը փոխադրելու համար, իսկ ինքը պիտի բռնի այս վերջինի տեղը՝ որպէս առաջնորդ Պարսկա-Հնդկաստանի թեմի եւ իր այդ պաշտօնում նա պիտի ծառայի որպէս խողովակ կամ միջնորդ Խորհրդային կառավարութեան հրահանգներն ու մարդիկը անարգել Հնդկաստան անցնելու համար:

Ես Արսէն եպիսկոպոսին մի անգամ միայն պատահել էի Թէհրանում եւ նրա մասին իմ տպաւորութիւնը լաւ էր եղել. դրա համար էլ հակաճառեցի իմ լրատուի հետ: Մի երկու տարի անց, սակայն, յայտնի չէկիտ Ազաբէկովի Արսէն եպիսկոպոս Ղլըջեան...

...կար եւ բացուեց այդ դաւադրութիւնը: Ուրեմն ճիշդ էր ասել երիտասարդ համայնավարը դաւադրութիւնը բացուելուց մի տարի քանի ամիս առաջ:

...մեծ ռազմափորձեր կատարել տուաւ: Մի ռազմափորձ էլ տեղի ունեցաւ Անդրկովկասում, որ հայկական բանակը՝ որպէս թշնամի բանակ՝ պիտի յարձակուէր Կովկասեան ընդհանուր...

# ՀԱՅ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ ԱՏԼԱՆՏԵԱՆԻ ԱՓԵՐՈՒՆ ՎՐԱՅ

Մեծ պատերազմին Ֆրանսայի հողին վրայ մեռնող Ամերիկացի զինուորներու նուիրուած հսկայ յիշատակարանը կը բարձրանայ Ատլանտեանի ափերը մխուած երկար թերակղզիի ծայրը: Կարծես յաւիտենականութեան հետ նոյնացած այդ յիշատակարանին դէմը կը գտնուիթուայանը, եւ երկուքին մէջ գտնուող ծովամասը բերանն է շատ երկար եւ լայն ծոցի մը, Ֆրանսայի արեւմտեան ափերուն վըրայ կազմուած բազմաթիւ ծովախորշերէն եւ ծոցերէն մին, պատմական հին յիշատակներով լեցուն:

Royanի ճիշդ քովն է Saint - Georges de Didiune, անուանի երկուքն ալ, իրենց ճոխ եւ արդիական ծովափներովը, շքեղ զբօսավայրերովը եւ եղեւնի անտառներովը:

...կաթնաթոյր փրփուրներուն՝ նոր երգեր կը յօրինեն: Ծովո՛ւն երգը:

Ընդարձակ ծովափին վրայ, գոյնզգոյն ծովազգեստներով այս մարդկային ծովուն մէջ, հազարաւոր տղոց զբօսավայրին մէջ ցաւ եւ տխրութիւն մուտ գտած չէ վստահաբար:

Կրկին կը հնչէ սուլիչը, դուրս կը թափին մեր հրաշեայ սեւահեր կոբիկները եւ անոյշ հուրիկները, կիզիչ արեւէն կաթով շոքոլայի գոյն առած թուխ մարմիններով, եւ կը վազեն նետի պէս արագ, հեռուն իրենց հաւաքավայրը, հիմա ալ արեւուն տակ չորնալու եւ աւազներուն վրայ գլորելով շարունակելու իրենց խաղ ու խըրախճանք կեանքը, պոռչտուքները, ծիծաղներն ու վազվզուքը:

...խնայած բնակարանը ամէն կերպով շտկելու, պատրաստելու դժուար հարցին մէջ եւ աշալուրջ հսկէ ընդհանուր գործին, որ ժամացոյցի նման լարուած է:

14 մաքուր եւ արեւոտ ննջարաններու իւրաքանչիւրին դրան վրայ անուն մը կայ, Հայաստան, Կարմիր, Կապոյտ, Նարնջագոյն, Գողթան եւայլն: Ամէն ինչ խորհած է, մինչ հայ ոգին ներշնչելու համար տղոց:

Տղոց կեանքը համակ տօն է եւ խինդ:

Արշալոյսին ծննդեան տարեդարձն է որ կը կատարուէր անցեալ օր: ...

(Շար.)



# ՍՏԱՄՊՈՒԼԻ ՆԵՐՔԻՆԻՆ

## The Eunuch of Stamboul

By DENNIS WHEATLEY
Frans : J. M.

Գրեց՝ ՏԷՆԻՍ ՀՈՒԻԹԼԻ
Թարգմ. Ժ. Մ.

— Անօգուտ է, Պ. Բարու, ըսաւ Ալի .եթէ մատդ չարժես, մուկի մը պէս պիտի սատկիս ... ի հարկէ քեզի համար որ եւ է տարբերութիւն չըներ ատիկա, քանի որ, ամէն պարագայի մէջ, վերթէ անմիջապէս պիտի սպաննուիս, բայց յանուն կենցաղավարութեան փափաքելի է որ օրիորդ Տէնքէնըրին խնայես զօրքին վրայ ուղղելիդ ժայթքումը տեսնելու անախորժութիւնը ...

— Պիտի սպաննուի՞մ, ...

...թեանս կը գտնուէիր ...

— Ոչ, միայն մէկ անգամ հանդիպած եմ քեզի՝ Անգլիա մեր ակումբին պարահանդէսին, անցեալ յունիսին ..

— Շատ բարի. դուն չէի՞ր որ հաւրիւրապետ Տէյթիմին հետ մասնակցեցար այն ամօթալի յարձակումին որուն ենթարկուեցայ ես ...

— Հասկցա՛նք, բողոքեց Փիթըր, բայց չես կրնար մարդ սպաննել այդ տեսակ պզտիկ բանի մը համար ...

(Շար.)

բանա կը վերադառնայ եւ կեանքը անուշ գտնելով, Հպատակութիւն կը խնդրէ 1923ին, նախապէս զինուորական քննութիւն կատարել տալով իբրեւ անկար, զինուորական որ եւ է պարտաւորութենէ ազատելու համար։ Գործօն համայնավար, միեւնոյն ատեն տէր դարձած է գեղեցիկ յարկաբաժնի մը՝ Լա Մատրակի մէջ, հանգստեան տան մը՝ Նան - լէ - Փէնի մէջ եւ վիլլայի մը՝ Պուա - Լիւգիի մէջ։ Ո՜վ գիտէ Պոլսոյ ո՛ր հրէանոցէն (կէթօ) ելած այս մէ - թէքին համար է որ հազարաւոր ֆրանսացի բանուորներ գործադուլ ըրած են»։

*** Նոյն թերթը Մարսէյլի նաւահանգստի բանուորներուն գործադուլն ալ բացատրելով, գիտել կուտայ թէ մեծ մասը օտարականներ են.— 28 առ հարիւր սպանիացի, 14 առհարիւր իտալացի, 6 առ հարիւր յոյն, 4 առ հարիւր սուրիացի, 7 առ հարիւր զանազան ազգերէ, համագումար 59 առ հարիւր, 41 առ հարիւր Ֆրանսացիներու դիմաց։

## Պաղեստինի խնդիրը եւ Իպնը Սէուտ

Փարիզէն անցնելով Լոնտոն գնաց Արաբիոյ Թագաւորը, Իպնը - Սէուտ։ Մանաւանդ պիտի զբաղի Պաղեստինի հարցով։

Խռովութիւնները կը շարունակուին անվերջ։ Կիրակի օր ընդհարում մը պատահեցաւ զօրքին եւ ապստամբներուն միջեւ։ Այս վերջիններէն եօթը հոգի սպաննուեցան, երեք հոգի գերի բռնուեցան։ Սպաննուեցաւ նաեւ անգլիացի սպայ մը։

*** Կրկին օրակարգի վրայ դրուած է Պաղեստինի բաժանման խնդիրը, իբրեւ հետեւանք նոր յանձնախումբին կատարած քննութեանց։ Արաբները միշտ կ'ընդդիմանան բաժանման եւ ատոր համար է որ կը սաստկացնեն աճաբեկումները։ Հաւանական է որ փոփոխութիւններ կատարուին սկզբնական ծրագրին մէջ։

## Խ. Միութեան Գերագոյն Խորհուրդը եւ զինուորական վարկերը

Խ. Միութեան Գերագոյն Խորհուրդը միաձայնութեամբ վաւերացուց զինուորական վարկերը, որոնք ընդհ. նմանացյին մօտ 40 առ հարիւրը կը կազմեն։ Այս առթիւ ճառեր խօսեցան Վրաստանի, Տաճկաստանի, Խրիմի, Պաշքիրի, Տաջստանի, Թիւրքմէնիստանի պատգամաւորները, «ջերմապէս պաշտպանելով 27 միլիոն րուբլիի յատկացումը երկրին պաշտպանութեան, ի տես ֆաշական յարձակման յարաճուն վտանգին։ Թող այս թուանշանները մտածել տան ֆաշական գրգռիչներուն»։

*** Վիճարանութեանց ընթացքին, նմանական գործավարը, Զվերեւ, մասնաւորապէս ծանրացաւ հետեւեալ կէտին վրայ.—«Կարգ մը դաշնակցային հանրապետութիւններ չարունակ կ'աւելցնեն իրենց ելքի նախահաշիւը, առանց փոխարինութիւն ցուցնելու մուտքի գլուխէն։ Կարգ մը հանրապետութիւններ դէշ կը գործածեն իրեն յատկացուած վարկերը, մասնաւորապէս մշակութային եւ ընկերային ծախքերու համար։ Հաշուակալութեան եւ հաշուեքննութեան քաոսային վիճակը թոյլ չի տար սաուգել նմանացյին գործադրութիւնը եւ ժամանակին երեւան հանել չեղումները»։

## ՃԱՆԱՅՑԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՌՈՒՍՆԻՃԱՓՈՆԱԿԱՆ համաձայնութեան տրամադրութեամբ, երկու կողմերը 75ական մեթր ետ քաշեցին իրենց զօրքը, վիճելի բլուրէն։ Բուն բանակցութիւնները նոր պիտի սկսին։

ՆԱՓՈԼԷՈՆԻ ծննդեան տարեդարձին առթիւ, երէկ, 15 օգոստոս, մեծ հանդիսաւորութեամբ կատարուեցաւ Նափոլէոնի արձանին բացումը, Այաչիոյի մէջ (Քորսիքա), նախագահութեամբ ծովային նախարարին։

ԳԵՐՄԱՆԱԿԱՆ օդանաւ մը, «Քոնտոր», որ դադարապէս Նիւ Եորք գացած էր 25 ժամէն, Պերլին վերադարձաւ 19 ժամ 58 վայրկեանէն, (6397 քիլոմեթր), ժամական 320 քիլոմեթր կտրելով։

«ՔՈՒԻՆ ՄԷՐԻ», Անգլիոյ անդրատլանտեան շքեղ շոգենաւը, նորէն շահեցաւ կապոյտ ժապաւէնը, Նիւ-Եորք Անգլիա հեռաւորութիւնը կտրելով 3 օր, 20 ժամ եւ 42 վայրկեանէն (ժամը 32 մղոն 8)։ Նորմանտի նոյն ճամբան կտրած էր ժամը 31.20 մղոնէն եւ կապոյտ ժապաւէնը շահած՝ 1937 օգոստոս 5ին։

ՀՈՒՆԳԱՐԻՈՅ խնամակալը, ծովակալ Հորթի, Պերլին հրաւիրուած ըլլալով, արտակարգ պատրաստութիւններ կը տեսնուին, ընդունելութեան համար։



## ՖՐ. Կ. ԽԱՉԻ ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆՆԵՐԸ

Բ. ԽՈՒՄԲԸ մեկնած է 3 օգոստ.ին եւ կը վերադառնայ սեպտ. 3ին։

Գ. ԽՈՒՄԲԸ Փարիզէն կը մեկնի օգոստ. 16ին, ժամը 11ին, Կառ Մօնփարնասէն։

** Կեդր. Ֆրանսայի մասնաճիւղերէն Կրընոպլի, Ռոմանի, Վալանսի, Սէնթ Էթիէնի, Ս. Շամոնի, Տէսինի, Վիէնի եւ Լիոնի տղաքը պէտք է առաջնորդուին 16 օգոստ.ին երեկոյեան ժամը 6 ու կէսին, Լիոնի մեծ կայարանը եւ յանձնուին Լիոնի մասնաճիւղի ներկայացուցչին։

Նոյն օրը կը մեկնի նաեւ Մարսէյլի խումբը։

Դ. ԽՈՒՄԲ մը եւս Փարիզէն պիտի մեկնի սեպտ. 3ին եւ վերադառնայ սեպտ. 30ին, միշտ նոյն ժամուն, նոյն կայարանէն։



## ԱՐԱՐԱՅԻ ՏԱՐԵԴԱՐՁԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Հայ Լէգէոնական Միութեան Մարսիլիոյ մասնաճիւղի վարչութիւնը 25 Սեպտեմբերին մեծ հանդիսաւորութեամբ պիտի տօնէ Արարայի ճակատամարտին 20րդ տարեդարձը Ս. Թարգմանչաց եկեղեցին մէջ։ Ներկայ պիտի ըլլան Ֆրանսական զինուորական եւ քաղաքային պաշտօնական անձնաւորութիւններ, ինչպէս նաեւ հրամանատար Գրնուա Տ'Անգի (Փարիզէն)։

Հանդէսէն վերջ պիտի կատարուի լէգէոնական ընդհ. հաւաքոյթ մը։



ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Հ. Յ. Դ. «ԱՆՏՈՔ» ենթակոմիտէն սրտի խորունկ կսկիծով ցաւակցութիւն կը յայտնէ ընկ. Անդրանիկ Ասլանեանի եւ իր ընտանեկան պարագաներուն՝ իրենց սիրեցեալ զաւկին արկածալի ախուր մահուան առթիւ։


Le Gérant : H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme — PARIS (13)

